Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 22 ՆՈՅԵՄԲԵՐ 1951

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ

ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԿԱՐԳԵՐԻ ՀԱՍՏԱՏՄԱՆ 31-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ (Նյութեր զեկուցումների և զրույցների համար) . . . 1

ԱՄԵՆԱԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ԿՈՆՍՏԻՏՈՒՑԻԱՆ ԱՇԽԱՐՀՈՒՄ . . . . . . . 35

Օգնություն ագիտատորներին

ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ . . . 45

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ,
Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին,
հեռախոս՝ 2—52—78

# ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԿԱՐԳԵՐԻ ՀԱՍՏԱՏՄԱՆ 31-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

## (Նյութեր զեկուցումների և զրույցների համար)

*Հայաստանում սովետական կարգերի հաստատման 31-րդ տարեդարձը հայ ժողովուրդը տոնում է քաղաքական, տնտեսական աննախընթաց հաջողությունների, գիտության ու կուլտուրայի բուռն վերելքի, աշխատավորության կենսամակարդակի հարաճուն աճի պայմաններում։*

*Հայաստանի աշխատավորությունը իր վերածննդի 31-րդ տարելիցը նշում է ամբողջ աշխարհում սոցիալիզմի ու դեմոկրատիայի ուժերի անշեղ աճման, նեխվող իմպերիալիզմի ուժերի անընդհատ թուլացման, ընդդեմ անգլո-ամերիկյան պատերազմի հրրձիգների՝ պատմության մեջ չտեսնված միաձույլ խաղաղության շարժման հարաճուն ծավալման պայմաններում։*

*Բոլշևիկների մեծ պարտիայի լենինյան-*

ստալինյան ազգային իմաստուն քաղաքա-
կանության շնորհիվ, անցած 31 տարիների
ընթացքում, Սովետական Հայաստանը դար-
ձել է Սովետական մեծ Միության առաջավոր
ռեսպուբլիկաներից մեկը, իր զարգացած ար-
դյունաբերությամբ ու գյուղատնտեսությամբ,
ձևով ազգային, բովանդակությամբ սոցիա-
լիստական ծաղկած կուլտուրայով։

Սովետական Միության ժողովուրդների
համերաշխ ընտանիքում, ռուս մեծ ժողովըր-
դի եղբայրական օգնությամբ, հայ ժողո-
վըրդի մեծ բարեկամ ընկեր Ստալինի ամեն-
օրյա հոգատարության շնորհիվ իրականացել
է հայ աշխատավորության դարերի իղձը՝
ձեռք է բերվել ինքնուրույն պետականու-
թյուն, ստեղծագործական աշխատանքի ու
խաղաղ գոյության լավագույն պայմաններ։

Իր ձայնը միացնելով Սովետական Միու-
թյան մյուս ժողովուրդների խաղաղության
հզոր ձայնին, Հայաստանի աշխատավորու-
թյունը այսօր, քան երբևէ, իր վերածննդի
31-րդ տարելիցին լի է վճռականությամբ
կատարելու ընկեր Ստալինի կողմից սովե-
տական ժողովրդի առջև դրված պատմական
խնդիրները՝ աշխատելու արդյունաբերության,
գյուղատնտեսության, կուլտուրայի է՛լ ավելի



ծաղկման, ՍՍՌՄ ժողովուրդների լենինյան-
ստալինյան բարեկամությունը է՛լ ավե-
լի ամրապնդելու, մեր սոցիալիստական Հայ-
րենիքի հետագա ծաղկման ու հզորության
աճման, ամբողջ աշխարհում խաղաղության
գործի հետագա ծավալման համար։



Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևո-
լյուցիան մարդկային հասարակության պատ-
մության մեջ բացեց նոր դարագլուխ՝ պրո-
լետարական ռևոլյուցիաների դարագլուխը։
Հայաստանի աշխատավորությունը, ամուր
կանգնելով Հոկտեմբերյան Սոցիալիստական
Մեծ ռևոլյուցիայի դրոշի տակ, Լենինի-
Ստալինի պարտիայի գլխավորությամբ, ռուս
մեծ ժողովրդի եղբայրական օգնությամբ
1920 թվականի նոյեմբերի 29-ին տապալեց
անգլո-ամերիկյան իմպերիալիստների և
նրանց գործակալ դաշնակների արյունոտ լու-
ծը և Հայաստանում հռչակեց սովետական
իշխանություն։ Հայ ժողովրդի պատմության
մեջ բացվեց ազգային վերածննդի, սովետա-
կան ազատ կյանքի, սոցիալիզմի դարագլու-
խը։

Սովետական Հայաստանը Հոկտեմբերյան
Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի ծնունդն
է։

1920 թվականի դեկտեմբերի 4-ին «Կեցցե Սովետական Հայաստանը» խորագրով հոդվածում Ի. Վ. Ստալինը գրել է.

«Տանջված ու բազմաչարչար, Անտանտայի և դաշնակների ողորմածությամբ սովի, քայքայման ու գաղթի մատնված Հայաստանը,— բոլոր «բարեկամների» կողմից խաբված այդ Հայաստանը այժմ իր փրկությունը գտավ այն բանի մեջ, որ իրեն հայտարարեց սովետական երկիր»։

Հայաստանը ընդմիշտ ազատվեց հայ ժողովրդի ոխերիմ թշնամի դաշնակների դաժան տիրապետությունից։ Հայ ժողովուրդը փրկվեց սպառնացող ֆիզիկական բնաջնջումից, ազատագրվեց ներքին ու արտաքին կեղեքիչներից, ձեռք բերեց պետականություն՝ ստեղծեց իր ազատ, ինքնուրույն Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկան։



Լենինի-Ստալինի ղեկավարությամբ, ռուս մեծ ժողովրդի եղբայրական օգնությամբ, հայ ժողովուրդը պատմական շատ կարճ ժամանակամիջոցում ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում հասավ վիթխարի հաջողությունների։ Հայաստանը հետամնաց ագրարային երկրից վերածվեց



զարգացած ինդուստրիայի և առաջավոր գյուղատնտեսության սոցիալիստական ռեսպուբլիկայի։

Համաշխարհային պատմական հաղթանակ տանելով գերմանա-ֆաշիստական զավթիչների և ճապոնական միլիտարիստների դեմ, ապահովելով իր հայրենիքի անկախությունն ու փառքը, սովետական ժողովուրդը պատմական շատ կարճ ժամանակամիջոցում ոչ միայն կարողացավ վերականգնել պատերազմից տուժած շրջանները, վերականգնել արդյունաբերության ու գյուղատնտեսության նախապատերազմյան մակարդակը, այլև կազմակերպեց ՍՍՌՄ-ի ժողովրդական տնտեսության նոր հզոր վերելք։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման 1946—1950 թվականների հնգամյա պլանը հանդիսացավ կոմունիզմի համար պայքարող սովետական ժողովրդի տնտեսական ու կուլտուրական գործունեության հիմքը, կոմունիզմի շինարարության վիթխարի ծրագրի կենսագործման կարևոր հիմքը։

Այն ժամանակ, երբ Ամերիկայի, Անգլիայի և մյուս կապիտալիստական երկրների իմպերիալիստները շարունակում են սպառազինությունների կատաղի մրցավազքը, երբ

կրճատում են քաղաքացիական արդյունաբերությունը, ուժեղացնում աշխատավորների շահագործումը՝ նրանց դատապարտելով քաղցի ու աղքատության, նորանոր ագրեսիաներ են կատարում իրենց ազատության ու անկախության համար պայքարող ժողովուրդների դեմ, սովետական ժողովուրդը, հենված իր հարազատ Կառավարության խաղաղասիրական արտաքին քաղաքականության վրա, հանգիստ ու վստահ շարունակում է մեծ և խաղաղ կոմունիստական շինարարությունը։

Սովետական ժողովուրդը հաջողությամբ իրականացնում է Վոլգայի, Դոնի, Դնեպրի և Ամու-Դարյայի վրա ստեղծվող մեծ հիդրոտեխնիկական կառուցումները, որոնց իրականացման շնորհիվ կլուծվեն խոշորագույն ժողովրդատնտեսական խնդիրներ։ Նոր էլեկտրակայանները տարեկան կտան 22,5 միլիարդ կիլովատ-ժամ էժան էլեկտրաէներգիա, 28 միլիոն հեկտարով կընդլայնվեն ոռոգվող և ջրովի տարածությունները, այդ հնարավորություն կտա լրացուցիչ կերպով արտադրել 3 միլիոն տոննա բամբակի հումք, որը կազմում է ԱՄՆ-ում բամբակի տարեկան միջին արտադրության ավելի քան մեկ երրորդը, կես միլիարդ փութ ցորեն, 30 միլիոն փութ բրինձ և այլն։



Կոմունիստական շինարարության նորանոր հաղթանակների համար, մեր երկրի բոլոր ժողովուրդների հետ միասին, անսահման նվիրվածությամբ աշխատում ու պայքարում է հայ ժողովուրդը։

Հետպատերազմյան ստալինյան հնգամյակը Հայկական ՍՍՌ-ում կատարվեց ժամկետից շուտ։ Հնգամյա պլանի համաձայն Սովետական Հայաստանի արդյունաբերության համախառն արտադրանքը 1940 թվականի համեմատությամբ պետք է ավելանար 210 տոկոսով, իսկ փաստորեն ավելացել է 241 տոկոսով։ Արդյունաբերության բնագավառում հնգամյա պլանը կատարվել էր դեռ 1949 թվականի վերջին։ Հնգամյակի տարիներին հատկապես աճեց մետաղամշակման, էլեկտրամեքենաշինական և դազգահաշինական արդյունաբերությունը։ Հնգամյակի տարիներին կառուցվել և շահագործման է հանձնվել ավելի քան 50 արտադրական նոր ձեռնարկություն, ստեղծվել է էլեկտրոլիտային պղնձի, ալյումինի, կաբելի, գեներատորների, տրանսֆորմատորների, հիդրոտուրբինների, կոմպրեսորների, մետաղահատ դազգահների, ավտոմոբիլային ու տրակտորային պահեստամասերի, ժամացույցների, էլեկտրաչափիչ սարքերի արտադրություն։

Հնգամյակի տարիներին զգալիորեն ընդարձակվեցին գունավոր մետալուրգիայի ձեռնարկությունները, ծավալվեց լեռնային արդյունաբերության նոր արտադրական կոմբինատների շինարարությունը։ Ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության մեջ զգալիորեն զարգացել է սինթետիկ կաուչուկի, ավտոդողերի, սոդայի և հանքային զանազան պարարտանյութերի արտադրությունը։

Ծանր ինդուստրիայի նոր ճյուղերի ստեղծումը և Հայաստանի ընդերքի բնական հարստությունների արդյունահանման ու վերամշակման զգալի ընդարձակումը հանդիսանում է Սովետական Հայաստանի սոցիալիստական արդյունաբերության զարգացման բնորոշ առանձնահատկությունը։

Արդյունաբերության առաջատար ճյուղերի տեսակարար կշիռը 1950 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, ավելացել է ավելի քան 6 անգամ։ Արդյունաբերության նոր ճյուղերի ստեղծումն արմատապես փոխեց մեր ռեսպուբլիկայի դեմքը։ Սովետական Հայաստանի ձեռնարկությունների արդյունաբերական արտադրանքի բազմաթիվ տեսակներ լայնորեն հայտնի են ռեսպուբլիկայի սահմաններից դուրս։



Հետպատերազմյան ժամանակաշրջանում Սովետական Հայաստանի արդյունաբերությունը հագեցվեց հայրենական ժամանակակից նոր տեխնիկայով։ Արդյունաբերության բազայի վրա աճեցին բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների բազմաթիվ կադրեր, որոնք հաջողությամբ արտադրության մեջ արմատավորում են ժամանակակից բարդ տեխնիկան։

Արդյունաբերության առաջավոր ճյուղերի հետագա զարգացման և նոր ճյուղերի ստեղծման կարևորագույն բազա հանդիսացավ էլեկտրաէներգիայի արտադրության աճը, որը 1950 թվականին, հնգամյակի վերջին տարում, համեմատած նախապատերազմյան մակարդակի հետ, ավելացավ 2,4 անգամ՝ գերազանցելով հնգամյա պլանի առաջադրանքը։

Հայաստանի աշխատավորությունը պատվով է կատարում Լենինի պատգամը երկրի էլեկտրիֆիկացման մասին։ Նախասովետական Հայաստանի մի քանի փոքրիկ էլեկտրակայանների փոխարեն, այժմ Հայկական ՍՍՌ-ում գործում են բազմաթիվ խոշոր էլեկտրակայաններ։ Այժմ Հայկական ՍՍՌ-ն բնակչության յուրաքանչյուր շնչին ընկնող էլեկտրաէներգիայի արտադրանքի քանակով

առաջ է անցել այնպիսի կապիտալիստական երկրներից, ինչպիսիք են՝ Ֆրանսիան, Իտալիան և Ավստրիան։

Զգալի վերելք է ապրում Սովետական Հայաստանի սննդի արդյունաբերությունը, որն իր բազմաթիվ ճյուղերով թողարկում է 400-ից ավելի զանազան տեսակի արտադրանք։ 1950 թվականին պահածոների արտադրությունը նախապատերազմյան մակարդակը գերազանցեց 80 տոկոսով, կենդանական յուղինը՝ 24 տոկոսով, մսինը՝ 20 տոկոսով։

Է՛լ ավելի է զարգացել թեթև արդյունաբերությունը։ Բամբակեղեն գործվածքների արտադրությունը 1950 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, ավելացել է 1,3 անգամ, մետաքսյա գործվածքներինը՝ 6,9 անգամ։ Ռեսպուբլիկայում կազմակերպվել է մետաքսյա և բրդյա գործվածքների ավելի բարձր տեսակների արտադրությունը։

Արդյունաբերության արագ զարգացման և արտադրանքի աճի հետ միաժամանակ բարելավվում է սարքավորման օգտագործումը, արմատավորվում է նոր, ժամանակակից տեխնիկան, ծավալվում է աշխատատար պրոցեսների մեքենայացումը, բարելավվում է թողարկվող արտադրանքի որակը, իջեցվում է ինքնարժեքը, պայքար է ծավալվում



համքի, վառելիքի, էլեկտրաէներգիայի խնայողության համար։

Սովետական Հայաստանի արդյունաբերության բնագավառի աշխատողները, ծավալելով սոցիալիստական մրցությունը, կիրառելով ստախանովյան աշխատանքի առաջավոր մեթոդները, զգալի հաջողությունների են հասել այս տարի։ Արդյունաբերության համախառն արտադրանքի 1951 թվականի 3-րդ եռամսյակի պլանը կատարվել է 107 տոկոսով, այսինքն՝ 1950 թվականի 3-րդ եռամսյակի համեմատությամբ աճել է 23 տոկոսով։

Հայկական ՍՍՌ-ի արդյունաբերությունը կոմունիզմի մեծ կառուցումներին է ուղարկում տուրբիններ, օդային կոմպրեսորներ, գեներատորներ, տրանսֆորմատորներ, էլեկտրալուսավորման արմատուրա, ավտոմեքենաների դետալներ, ավտոդողեր, պեմզա, արթիկ-տուֆ, մարմար և այլ մեքենաներ ու շինանյութեր։ Ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններում լայն ծավալ է ստացել սոցիալիստական մրցությունը՝ խաղաղության այդ կառուցումների պատվերները ժամկետից շուտ և բարձր որակով կատարելու համար։



*Հայաստանում սովետական կարգերի հաստատման 31-րդ տարեդարձը խոշոր հաջողություններով է դիմավորում ռեսպուբլիկայի կոլտնտեսային գյուղացիությունը։ Սովետական իշխանության տարիներին ամբողջովին ու արմատապես վերափոխվեց գյուղը։ Կոլտնտեսային կարգերը կյանք տվին հայ գյուղին, վերացրին շահագործումը և աղքատությունը, աշխատավորության համար ստեղծվեց ունևոր ու երջանիկ կյանք։*

*Սովետական Կառավարության ամենօրյա օգնության շնորհիվ Հայաստանի գյուղացիությունը պատմական կարճ ժամանակամիջոցում հասավ զգալի հաջողությունների, ինչպես ցանքատարածությունների ընդարձակման, այնպես էլ բերքատվության բարձրացման ուղղությամբ։*

*Ռեսպուբլիկայի սոցիալիստական գյուղատնտեսությունը աննախընթաց վերելք է ապրում հետպատերազմյան ժամանակաշրջանում։ Սովետական Հայաստանի ընդհանուր ցանքատարածությունները, 1919 թվականի համեմատությամբ, ընդարձակվել են 6 անգամ, իսկ նախապատերազմյան 1940 թվականի համեմատությամբ աճել են ավելի*



*քան 11,6 տոկոսով։ Հետպատերազմյան ստալինյան հնգամյակի տարիներին խոշոր չափով աճեց գյուղատնտեսական մթերքների համախառն արտադրանքը։ Հնգամյակի վերջին տարում՝ 1950 թվականին, ռեսպուբլիկայում հացահատիկային կուլտուրաների համախառն բերքը 1940 թվականի մակարդակը գերազանցեց 43 տոկոսով, իսկ հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը 53 տոկոսով ավելի բարձր էր, քան նախապատերազմյան 1940 թվականին։*

*Հետպատերազմյան հնգամյակի տարիներին զգալի չափով աճեց գյուղատնտեսության տեխնիկական զինվածությունը։*

*1950 թվականին ռեսպուբլիկայի մեքենատրակտորային կայանները 45 տոկոսով ավելի շատ գյուղատնտեսական աշխատանք կատարեցին, քան 1940 թվականին։ Կոլտնտեսային գյուղացիությունը խոշոր հաջողությունների է հասել գյուղատնտեսության էլեկտրիֆիկացման ասպարեզում։ 1950 թվականի վերջին էլեկտրիֆիկացված էր ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների ավելի քան երկու երրորդ մասը։ Հոկտեմբերյանի, Աղինի, Իջևանի, Կիրովականի, Էջմիածնի և ռեսպուբլիկայի մի շարք այլ շրջանների բո-*

յոր կոլտնտեսությունները էլեկտրիֆիկացված են։

Սովետական իշխանության տարիներին խոշոր չափով ավելացավ Սովետական Հայաստանի ջրովի հողերի տարածությունը։ 1945 թվականի 200 հազար հեկտարի դիմաց 1950 թվականին ռեսպուբլիկայում ջրովի հողերի տարածությունը հասավ ավելի քան 220 հազար հեկտարի։ Հայաստանում սովետական կարգերի 31 տարիների ընթացքում կառուցվել է ավելի քան 90 ջրանցք։ Խոշոր աշխատանք է կատարվում ճահիճների չորացման և ոռոգելի հողերի տարածությունն ավելացնելու ուղղությամբ։

Մեր կոլտնտեսությունները զգալի հաջողությունների են հասել բնության վերափոխման ստալինյան հանճարեղ պլանի կենսագործման և գյուղատնտեսության մեջ միչուրինյան առաջավոր ագրոբիոլոգիայի սկզբունքների արմատավորման գործում։ Հողագործության կուլտուրան բարձրացնելու շնորհիվ Հայաստանի կոլտնտեսությունները, ինչպես 1950 թվականին, այնպես էլ այս տարի, ստացան հացահատիկային կուլտուրաների հարուստ բերք։

Հացահատիկի առատ բերք աճեցնելով, Հայկական ՍՍՌ կոլտնտեսությունները այս տա-



րի ժամկետից շուտ, 116 տոկոսով կատարեցին հարազատ պետությանը հացահատիկ հանձնելու պլանը, 760 հազար փութ ցորեն ավելի հանձնվեց պետությանը, քան անցյալ տարի։

Հետպատերազմյան ժամանակաշրջանում գյուղատնտեսության ձեռք բերած հաջողությունները պայմանավորեցին կոլտնտեսությունների կազմակերպական ու տնտեսական ամրապնդումը։ Միջոցներ ձեռք առնվեցին հանրային հողերը շռայլումից պաշտպանելու, կոլտնտեսություններում աշխատանքի կազմակերպումը բարելավելու և կոլտնտեսությունները խոշորացնելու ուղղությամբ։

Տարեց-տարի ավելանում է կոլտնտեսությունների հանրային հարստությունը։ Ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների դրամական եկամուտները 1950 թվականին, համեմատած նախապատերազմյան 1940 թվականի հետ, ավելացել են 87 տոկոսով, ավելի քան երեք անգամ ավելացել են կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերը և երեք անգամ՝ արտադրության հիմնական միջոցները։

Խոշոր չափով աճել է կոլտնտեսականների աշխօրերի արժեքը։ Հոկտեմբերյանի շրջանի Բամբակաշատ, Արմավիր, Մրգաշատ, Ջանֆիդա, Նոր Արմավիր գյուղերի խոշորացված

կոլտնտեսություններից յուրաքանչյուրի դրամական եկամուտը 1950 թվականին կազմեց 4—8 միլիոն ռուբլի։ Մեկ աշխօրի դիմաց կոլտընտեսականներին բաշխվեց 20—25 ռուբլի դրամ։ 1948 թվականի համեմատությամբ Հոկտեմբերյանի շրջանի կոլտնտեսությունների դրամական եկամուտը 1950 թվականին գրեթե կրկնապատկվեց։ Արտաշատի շրջանի կոլտնտեսությունների համախառն եկամուտը, դրամական արտահայտությամբ, 1950 թվականին կազմեց 68 միլիոն ռուբլի։

Սովետական Հայաստանի կոլտնտեսություններն աչքի ընկնող նվաճումների են հասել նաև սոցիալիստական անասնաբուծության զարգացման ասպարեզում։ Հաջողությամբ է իրականացվում հանրային անասնաբուծության զարգացման եռամյա պլանը։ Ռեսպուբլիկայի բոլոր կոլտնտեսություններում ստեղծված են անասնապահական ֆերմաներ, իսկ շատ կոլտնտեսություններ ունեն 4—8 ֆերմա։ 1950 թվականին խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը, 1940 թվականի համեմատությամբ, աճել է 27 տոկոսով, մանր եղջերավոր անասուններինը՝ 72 տոկոսով, խոզերի գլխաքանակը՝ 2,2 անգամ, թռչուններինը՝ 3 անգամ։ Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում հանրա



յին մթերատու անասունների գլխաքանակն ավելացնելու վերաբերյալ հնգամյա պլանի առաջադրանքը գերակատարվել է։ Զգալի չափով բարելավվել է անասունների ցեղը, բարձրացել է անասունների մթերատվությունը, մեքենայացվում են անասնապահության աշխատատար պրոցեսները։ Գյուղատնտեսության բնագավառում ձեռք բերված հաջողությունների համար վերջին 2—3 տարիների ընթացքում ռեսպուբլիկայի կոլտնտեսային գյուղի 129 առաջավորներ. արժանացել են Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի բարձր կոչման, 3.418 մարդ պարգևատրվել է Սովետական Միության շքանշաններով և մեդալներով։

Չհանգստանալով ձեռք բերած հաջողություններով, Սովետական Հայաստանի կոլտնտեսային գյուղի աշխատավորները պայքարում են ցորենի ցանքատարածություններն ընդարձակելու և բերքատվությունը բարձրացնելու համար, այն հաշվով, որ առաջիկա 5—6 տարիների ընթացքում սեփական արտադրանքով ապահովվի ռեսպուբլիկայի հացի սպառման ամբողջ պահանջը։

***

Անցած 31 տարիները հանդիսանում են Սովետական Հայաստանի աշխատավորու-

թյան նյութական դրության բարելավման, նրա կուլտուրայի ծաղկման ու բուռն վերելքի տարիներ։ Արդյունաբերության և գյուղատնտեսության անշեղ աճը պայմաններ ստեղծեց մեր ռեսպուբլիկայի բանվորների, գյուղացիների և ինտելիգենցիայի նյութական բարեկեցությունն է՛լ ավելի բարձրացնելու համար։ Հայկական ՍՍՌ-ում 1950 թվականին բանվորների և ծառայողների թիվը, 1940 թվականի համեմատությամբ, ավելացել է 90 հազարով, իսկ աշխատավարձի ֆոնդը՝ 177 տոկոսով։ Տարեցտարի աճում է աշխատավորության կուլտուր-կենցաղային սպասարկման համար պետական հատկացումների չափը։

Հետպատերազմյան ստալինյան հնգամյակի ընթացքում կատարված պարենային և արդյունաբերական ապրանքների գների իջեցման հետևանքով սովետական ժողովուրդը շահեց ավելի քան երեք հարյուր միլիարդ ռուբլի։ Սովետական Կառավարության կողմից կենսագործված դրամական ռեֆորմը և մասսայական սպառման ապրանքների գների իջեցումը խոշոր չափով նպաստեցին բնակչության գնողունակության բարձրացմանը։ Սովետական Հայաստանի պետական և կոոպերատիվ առևտրի ցանցի միջոցով, 1940



թվականի համեմատությամբ, 1950 թվականին բնակչությանը վաճառվել է՝ բրդյա և մետաքսյա գործվածքներ՝ 30 տոկոսով, կոշկեղեն՝ 46 տոկոսով, գուլպեղեն՝ 62 տոկոսով, շաքար և հրուշակեղեն՝ 69 տոկոսով, լվացքի օճառ՝ 96 տոկոսով ավելի, իսկ այնպիսի սննդամթերքներ, ինչպիսիք են միսը, երշիկեղենը, կենդանական յուղը, բուսական յուղը՝ մոտ 4 անգամ ավելի, քան 1940 թվականին։

Մեր երկրի աշխատավորների կենսամակարդակի բարձրացման մասին ստալինյան հոգատարությունն իր փայլուն արտահայտությունն է գտնում տարեց-տարի ընդարձակվող բնակարանային շինարարության գործում։ Հետպատերազմյան ստալինյան հնգամյակի առաջին չորս տարիների ընթացքում Սովետական Հայաստանում շահագործման է հանձնվել ավելի քան 460 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն։ Հնգամյակի ընթացքում խոշոր չափով ընդարձակվեց բնակարանային ֆոնդը ռեսպուբլիկայի քաղաքներում, որտեղ կառուցվել և շահագործման է հանձնվել 265 հազար քառակուսի մետր նոր բնակելի տարածություն։ Միայն անհատական բնակարանային շինարարության կարգով քաղաքներում կա-

ռուցվել է մոտ 20 հազար նոր տուն։ Հնգամյակի տարիներին անհատական բնակարանային շինարարության նպատակով Սովետական Կառավարությունը մեր ռեսպուբլիկայի աշխատավորներին բաց է թողել 440 միլիոն ռուբլի երկարատև վարկ։ Սովետական Հայաստանի մայրաքաղաք Երևանը և մյուս քաղաքները, շրջանային կենտրոններն ու գյուղերը արմատապես վերափոխվել են։ Երևանն իր նորակառույց հոյակապ շենքերով, լայն պողոտաներով, ընդարձակ հրապարակներով ու պուրակներով դարձել է Սովետական Միության ամենագեղեցիկ քաղաքներից մեկը։ Հետպատերազմյան ստալինյան հնգամյակի տարիներին ավելի քան 15 հազար նոր և գեղեցիկ տներ են կառուցվել Սովետական Հայաստանի գյուղերում։ Սովետական Հայաստանում այժմ չկա մի գյուղ, որը չունենա իր դպրոցը, իր ակումբը, գրադարանը։

Կոմունիստական պարտիան և Սովետական Կառավարությունը մշտական հոգատարություն են ցուցաբերում աշխատավորների առողջության պահպանման ուղղությամբ։ Օրեցօր է՛լ ավելի է բարելավվում բնակչության բուժսպասարկումը։ 1940 թվականի համեմատությամբ, 1950 թվականին հիվան-



դանոցային մահճակալների քանակը ավելացավ 58 տոկոսով, ինչպես քաղաքներում, նույնպես և ռեսպուբլիկայի գյուղերում։ Հայկական ՍՍՌ-ի 1950 թվականի բյուջեի մոտ 63 տոկոսը հատկացվել է ժողովրդական լուսավորության, առողջապահության և մյուս կուլտուր-լուսավորական միջոցառումներին։ Սովետական երկրում ստալինյան հոգատարությամբ են շրջապատված մայրերն ու երեխաները։ 1945—1950 թվականներին բազմազավակ մայրերին ռեսպուբլիկայում տրվել է 200 միլիոն ռուբլի պետական նպաստ։

Հսկայական են հայ ժողովրդի ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի և արվեստի նվաճումները։ 1950—1951 ուսումնական տարում ռեսպուբլիկայի 1157 ոչ լրիվ միջնակարգ և միջնակարգ դպրոցներում սովորում են 302 հազար աշակերտ, մանկավարժական 9 ուսումնարաններում՝ 2433 մարդ և 219 երեկոյան բաներիտ ու գյուղերիտ դպրոցներում՝ 15.000 մարդ։ Ռեսպուբլիկայի քաղաքներում և գյուղերում հաջողությամբ իրագործվում է յոթնամյա և միջնակարգ պարտադիր ուսուցումը։ Սովետական Հայաստանում այժմ աշխատում է ավելի քան 15.000 մանկավարժ։ Անցած 31 տարիների ընթացքում Հայ-

կական ՍՍՌ-ում կառուցվել է ավելի քան 1000 դպրոցական շենք։ Հետպատերազմյան շրջանում խոշոր չափով ընդարձակվել է կուլտուր-լուսավորական հիմնարկների ցանցը։ Ներկայումս ռեսպուբլիկայում գործում են 17 բարձրագույն ուսումնական հաստատություններ։ Ռեսպուբլիկայի ուսումնական հաստատությունները հետպատերազմյան հնգամյակի ընթացքում երկրին տվել են 6 հազար մասնագետ՝ բարձրագույն և 8 հազար մասնագետ՝ միջնակարգ կրթությամբ։

Սովետական իշխանության տարիներին Հայաստանում աննախընթաց կերպով զարգացավ գիտությունը։ Հայկական ՍՍՌ Գիտությունների Ակադեմիան, որը ստեղծվել է 1943 թվականին, իր շուրջը համախմբելով հարյուրավոր գիտնականների, իր բազմաթիվ գիտա-հետազոտական հաստատություններով լուրջ ավանդ է մտցնում սովետական առաջավոր գիտության զարգացման գործում։ Սովետական Հայաստանի գիտնականները, ղեկավարվելով ընկեր Ստալինի պատմական ցուցումներով, հաջողությամբ մշակում են մի շարք գիտական պրոբլեմներ։

Բուռն կերպով ծաղկել է սովետահայ արվեստը։ Հայաստանի արվեստի աշխատողները գգալի հաջողությունների են հասել կո-



մունիզմի կառուցման համար սովետական մարդկանց մղած պայքարը գեղարվեստորեն արտացոլելու, նրանց Լենինի-Ստալինի գաղափարներով զինելու գործում։ Սովետահայ գրականությունը հարստացել է մեր սովետական իրականությունը, կոմունիզմի կառուցման մեծ գործում հայ ժողովրդի պայքարն արտացոլող նոր երկերով։

Հայ ժողովրդի ծաղկող կուլտուրայի և արվեստի փայլուն արտահայտությունը հանդիսացավ ռեսպուբլիկայի մայրաքաղաք Երևանում բարձրացված ընկեր Ստալինի Մոնումենտ-քանդակը։ Սովետական ժողովրդի մեծ առաջնորդին, հայ ժողովրդի ազատարարին պատկերող Մոնումենտը մեր ժողովրդի երախտագիտության բարձր գեղարվեստական արտահայտությունն է։

Սովետական Հայաստանում գիտության և կուլտուրայի ասպարեզում ձեռք բերված հաջողություններն արդյունք են բոլշևիկյան պարտիայի, անձամբ ընկեր Ստալինի ամենաջերմ հոգատարության։ Այդ հաջողությունները ձեռք են բերվել Հայաստանի կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի Կենտրոնական Կոմիտեի ամենօրյա ղեկավարությամբ։



Հայ ժողովուրդը իր ազատության և երջանկության 31-րդ տարին տոնում է խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի ճակատի էլ ավելի հզորացման ու ամրապնդման և իմպերիալիզմի ու պատերազմի ճամբարի անընդհատ թուլացման պայմաններում։

Անդուլ կերպով հոգ տանելով մեր երկրի հզորությունն էլ ավելի ամրապնդելու մասին, սովետական ժողովուրդը ձեռնամուխ է եղել կոմունիստական շինարարության նոր, ավելի հոյակապ խնդիրների լուծմանը. նոր, վիթխարի հիդրոէլեկտրակայաններ են րստեղծվում Վոլգայի, Դոնի, Դնեպրի, Ամու-Դարյայի վրա, կառուցվում են խոշորագույն ջրանցքներ, անց են կացվում միլիոնավոր հեկտարների ջուր մատակարարող նոր ոռոգելի սիստեմներ։ Այս ամենը վկայում է Սովետական Կառավարության խաղաղասիրական քաղաքականության մասին, մեր անծայրածիր Հայրենիքի ուժի և հզորության մասին։

Սովետական Միության ժողովուրդների եղբայրական օգնությամբ, ժողովրդական դեմոկրատիայի երկրները՝ Լեհաստանը, Հունգարիան, Չեխոսլովակիան, Ռումինիան, Բուլղարիան, Ալբանիան տնտեսական ու քաղա-



քական մեծ վերելք են ապրում, ուրախ ու վստահորեն կառուցում են նոր, սոցիալիստական կյանք։

Ելնելով սոցիալիզմի կառուցման խնդիրներից, Եվրոպայի ժողովրդական դեմոկրատիայի երկրների աշխատավորները գլխավոր ուշադրությունը նվիրում են հզոր սոցիալիստական ինդուստրիայի, առաջին հերթին ծանր արդյունաբերության ստեղծմանը։ 1950 թվականին ժողովրդական դեմոկրատիայի երկրները արդյունահանել են ավելի քան 150 միլիոն տոննա ածուխ և ձուլել են յոթ միլիոն տոննայից ավելի պողպատ։ Մինչև ընթացիկ տարվա առաջին կեսի վերջը արդյունաբերության նախապատերազմյան մակարդակը գերազանցվեց՝ Լեհաստանում և Հունգարիայում ավելի քան երկու և կես անգամ, Բուլղարիայում՝ ավելի քան 3 անգամ, Չեխոսլովակիայում՝ ավելի քան մեկ ու կես անգամ, իսկ Ալբանիայում ավելի քան 4 անգամ։

475 միլիոնանոց չին ժողովուրդը, Չինաստանի կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ իրենից ընդմիշտ թոթափելով իմպերիալիստական լուծը, ստեղծել է ժողովրդական դեմոկրատական պետություն և վստահորեն թևակոխել է իր զարգացման ու-

ղին։ Երկրի ներսում հաջողությամբ է ընթանում հողային ռեֆորմը, հողը հանձնվում է գյուղացիներին։ Ներկայումս հողային ռեֆորմը իրականացվել է 310 միլիոն բնակչություն ունեցող տերիտորիայի վրա։ Հողային ռեֆորմի հետևանքով երկրում հացահատիկային կուլտուրաների ընդհանուր բերքը 1950 թվականին, 1949 թվականի համեմատությամբ, ավելացավ 14 տոկոսով։ Նոր ժողովրդական Չինաստանը հանդիսանում է խաղաղության համար ակտիվ և հզոր մարտնչող։ Երկրի բնակչության 73 տոկոսից ավելին իր ստորագրությունն է դրել հինգ մեծ տերությունների միջև Խաղաղության Պակտ կնքելու վերաբերյալ Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Դիմումի տակ։

Այն ժամանակ, երբ արևմտյան իմպերիալիստական տերությունները Արևմտյան Գերմանիան վերածում են ռազմական պլացդարմի ու զենքի դարբնոցի, անտեսելով գերմանական ժողովրդի ազգային շահերը, Գերմանիային հրում են պատերազմի ուղին, Սովետական Միությունը գերմանական ժողովրդի առաջ բացել է խաղաղության և խաղաղ շինարարության ուղին, որը տանում է դեպի անկախ ու միասնական, դեմոկրատական ու խաղաղասեր Գերմանիայի ստեղ-



ծումը։ Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի ձեռք բերած հաջողությունները ուժեղացնում են գերմանական ժողովրդի պայքարը հանուն խաղաղության, հանուն միասնական ու անկախ դեմոկրատական գերմանական պետության։

Իմպերիալիզմի թիկունքի թուլությունն արտահայտվում է գաղութային ու կախյալ երկրներում ծավալվող ազգային-ազատագրական շարժումների աճի մեջ։ Ազգային ազատագրական շարժումը ընդգրկում է ավելի քան վեց հարյուր միլիոն մարդ։ Իմպերիալիզմի դեմ պայքարի են ելել Ասիայի, Լատինական Ամերիկայի և Աֆրիկայի ժողովուրդները։ Հակաիմպերիալիստական շարժումը լայն ծավալ է ստացել Միջին և Մերձավոր Արևելքի այնպիսի երկրներում, ինչպիսիք են՝ Իրանը, Եգիպտոսը, Իրաքը և Սիրիան։

Բոլոր իմպերիալիստական երկրների կառավարությունները վարում են սպառազինությունների մրցավազքի և օտարի տերիտորիաներ զավթելու քաղաքականություն։ Ամերիկա-անգլիական ինտերվենտները արդեն երկրորդ տարին է, ինչ ագրեսիվ պատերազմ են մղում հերոսական կորեական ժողովրդի դեմ։ Հասարակական կարծիքի

ճնշման տակ ստիպված լինելով բանակցություններ սկսել զինադադարի մասին, ամերիկա-անգլիական իմպերիալիստները կազմակերպում են լկտի պրովոկացիաներ՝ ձգձգելով ու ձախողելով այդ բանակցությունները։

Ամերիկյան իմպերիալիստները, ստեղծելով Հյուսիս-Ատլանտյան ռազմական դաշինքը, Միավորված Ազգերի Կազմակերպությունը վերածելով պատերազմի հրահրման գործիքի, անց են կացնում Արևմտյան Գերմանիայի և Ճապոնիայի վերառազմականացում. նրանք այնտեղ ստեղծում են պլացդարմեր՝ Եվրոպայի և Ասիայի խաղաղասեր ժողովուրդների դեմ պատերազմելու համար։ Ամերիկա-անգլիական ագրեսորների հանցավոր գործողությունները ինչպես կորեական ժողովրդի, այնպես էլ մյուս ժողովուրդների նկատմամբ չեն կարող հանգեցնել ուրիշ ոչ մի բանի, քան իմպերիալիզմի նորանոր պարտությունների, խաղաղության, ազգային-ազատության ու անկախության համար պայքարող ժողովուրդների համախմբմանը, միջազգային իմպերիալիզմի տապալմանը։

Խաղաղության մեծ դրոշակակիր ընկեր Ստալինի հանճարեղ ցուցումն այն մասին, թե խաղաղությունը կպահպանվի և կամրա-



պնդվի, եթե ժողովուրդները խաղաղության պահպանման գործը վերցնեն իրենց ձեռքը և դա պաշտպանեն մինչև վերջ, դարձել է բոլոր երկրների աշխատավորների պայքարի մարտական ծրագիրը՝ խաղաղության համար մղվող պայքարում։

Խաղաղության ուժերի ավանգարդում ընթանում է Սովետական մեծ Միությունը, պրոգրեսիվ մարդկության հույսն ու հպարտությունը, խաղաղության հենարանն ու դրոշակակիրը։

Սովետական Միության խաղաղասիրական ստալինյան քաղաքականությունը հենվում է սովետական ժողովուրդների լիակատար ու անվերապահ աջակցության վրա։ Սովետական երկրում չկան դասակարգեր և խմբեր, որոնք շահագրգռված լինեն պատերազմի հրահրման գործում։ Սովետական Միությունը չունի ագրեսիվ պլաններ և չի սպառնում ոչ մի երկրի ու ժողովրդի։ Սովետական Միության զինված ուժերը ոչ մի տեղ պատերազմ չեն մղում և չեն մասնակցում պատերազմական գործողությունների։ Չի եղել Սովետական Միության մասնակցությամբ տեղի ունեցած միջազգային ոչ մի կոնֆերանս կամ խորհրդակցություն, որտեղ Սովետական Կառավարության ներկայացուցիչները արած չը-

լինեն կոնստրուկտիվ առաջարկներ՝ միջազգային կոնֆլիկտները կանխելու և խաղաղության ու անվտանգությունը ապահովելու նպատակով։

Սովետական Միության ժողովուրդների եղբայրական ընտանիքում հայ ժողովուրդը ևս իր անսասան վճռականությունն է ցուցաբերում խաղաղության պաշտպանության մեծ գործում։

Ռեսպուբլիկայի աշխատավորությունը ամենաջերմ հավանությամբ ու աշխատանքային մասսայական սխրագործություններով դիմավորեց խաղաղության պաշտպանության Սովետական կոմիտեի բանաձևը՝ Սովետական Միությունում հինգ մեծ տերությունների միջև Խաղաղության Պակտ կնքելու Դիմումի տակ ստորագրություններ հավաքելու կամպանիա անցկացնելու մասին։ Սովետական Հայաստանի ավելի քան 900 հազար աշխատավորներ իրենց ստորագրություններն են դրել Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Դիմումի տակ։ Ստորագրությունների հավաքումը հայրենասիրական մեծ վերելք է առաջացրել ռեսպուբլիկայի գործարաններում, ֆաբրիկաներում, կոլտնտեսություններում ու սովխոզներում, ուսումնական հաստատություններում և աշխատանքային բոլոր



տեղամասերում։ Ի պատիվ Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Դիմումի տակ ստորագրությունների հավաքման, Հայաստանի բանվորները, կոլտնտեսականները մեծ ոգևորությամբ կանգնում են խաղաղության հերթափոխի։ Նրանք գերակատարում են իրենց արտադրական նորմաները, ստանձնում նորանոր պարտավորություններ։

Սովետական Միությունը իր ամբողջ արտաքին ու ներքին քաղաքականությամբ ամրապնդում է խաղաղությունը։ «Ինչ վերաբերում է Սովետական Միությանը,— ասում է ընկեր Ստալինը,— ապա նա այսուհետև էլ անսասանորեն կվարի պատերազմը կանխելու և խաղաղությունը պահպանելու քաղաքականությունը»։

Առաջնորդի խոսքերը Սովետական մարդկանց ոգեշնչում են դեպի աշխատանքային նոր սխրագործություններ՝ հանուն խաղաղության ու կոմունիզմի հաղթանակի մեր երկրում։ Այդ խոսքերը վստահություն են ներշնչում, որ խաղաղասեր ժողովուրդները Սովետական հզոր Միության գլխավորությամբ կվիժեցնեն պատերազմի հրձիգների մարդատյաց պլանները։

Խաղաղությունը կհաղթի պատերազմին, որովհետև խաղաղության կողմնակիցների

*շարժումը անհաղթահարելի է, այն օրեցօր աճում և ամրապնդվում է։ Խաղաղությունը կհաղթի պատերազմին, որովհետև խաղաղությունը գլխավորում է աշխարհում ամենահաղթ տերությունը՝ Սովետական Միությունը։ Խաղաղությունը կհաղթի պատերազմին, որովհետև այդ պայքարի դրոշի վրա գրված է՝ Ստալին։*



*Տոնելով Հայաստանում սովետական կարգերի հաստատման 31-րդ տարեդարձը, հայ աշխատավորությունը պատրաստվում է մյուս ժողովուրդների հետ արժանավայել կերպով նշելու Ստալինյան Կոնստիտուցիայի ընդունման 15-րդ տարեդարձը։*

*Ընկեր Ստալինի ձեռքով գրված մեր դարաշրջանի այդ ամենամեծ փաստաթղթում հավերժացել են Լենինի—Ստալինի պարտիայի կողմից ղեկավարվող սովետական ժողովրդի նշանավոր նվաճումները։ Ստալինյան Կոնստիտուցիան դարձել է Սովետական Միության աշխատավորության աշխատանքային ոգևորության աղբյուրը, դարձել է պրոգրեսիվ մարդկության ձեռքին հզոր զենք՝ իմպերիալիզմի դեմ հանուն խաղաղության ու*



*ժողովուրդների անվտանգության մղած պայքարում։*

*Իր վերածննդի վերջին տասնհինգ տարիների ընթացքում հայ աշխատավորությունը աշխատել ու ստեղծագործել է Ստալինյան Կոնստիտուցիայի կենարար արևի տակ, նրա սկզբունքներով կառուցել է իր նոր, ազատ ու երջանիկ կյանքը և իր բախտի նկատմամբ լի հավատով ՍՍՌՄ ժողովուրդների հետ լծվել է կոմունիզմի կառուցման հոյակապ գործին։*

*Հայաստանի աշխատավորները եռանդով նախապատրաստվում են ժողովրդական դատարանների ընտրություններին։*

*Սովետական Միության արդարադատության օրգանները, այդ թվում ժողովրդական դատարանները, վճռական դեր են խաղացել և շարունակում են իրենց մեծ ու շնորհակալ պարտականությունը՝ ՍՍՌՄ-ում կոմունիստական հասարակարգի կառուցման համար, հանրային սոցիալիստական սեփականության պահպանության, ՍՍՌՄ քաղաքացիների կողմից պետական օրենքները ճիշտ և ժամանակին կատարելու, սոցիալիստական համակեցության օրենքները հարգելու, սովետական մարդկանց իրավունքների պահպանության ուղղությամբ։*

Ահա թե ինչու ժողովրդական դատավորների ընտրությունների առթիվ մեր ռեսպուբլիկայի աշխատավորությունը հանդես է բերում աշխատանքային խանդավառություն, քաղաքական բարձր ակտիվություն տնտեսական, քաղաքական նոր հաջողություններ ձեռք բերելու համար։

Հայ ժողովուրդը, տոնելով իր պետականության ու ազգային վերածննդի 31-րդ տարեդարձը, հանրագումարի բերելով տնտեսության, կուլտուրայի ու գիտության բնագավառներում ձեռք բերված հաջողությունները, իր անհուն երախտագիտությունն ու նվիրվածությունն է հայտնում կոմունիստական պարտիային, Սովետական Կառավարությանը և ժողովուրդների իմաստուն առաջնորդ, հայ ժողովրդի ազատարար մեծ Ստալինին։

Ընկեր Ստալինի առաջնորդությամբ, ՍՍՌՄ-ի ժողովուրդների հետ միասին պայքարելով երկարատև ու կայուն խաղաղության համար, հայ ժողովուրդը հաջողությամբ ընթանում է դեպի կոմունիզմ։

---

# ԱՄԵՆԱԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ԿՈՆՍՏԻՏՈՒՑԻԱՆ ԱՇԽԱՐՀՈՒՄ

Հինգ ամիս տևող համաժողովրդական քննարկումից հետո, 1936 թվականի դեկտեմբերի 5-ին Սովետների Համամիութենական 8-րդ Արտակարգ համագումարը հաստատեց Սովետական Միության նոր Կոնստիտուցիան։

Նոր Կոնստիտուցիան օրենսդրական կերպով ամրապնդեց այն, ինչ որ նվաճված և ձեռք էր բերված միլիոնավոր բանվորների, գյուղացիների կողմից՝ կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ։ Սովետական ժողովուրդը սիրով և հպարտությամբ Նոր Կոնստիտուցիան անվանեց Ստալինյան Կոնստիտուցիա՝ նրա հանճարեղ ստեղծող մեծ Ստալինի անունով։

ՍՍՌՄ նոր Կոնստիտուցիայի ընդունման օրվանից անցած 15 տարիները մեր երկրի համար հանդիսացան սոցիալիստական հասարակարգի, սովետական դեմոկրատիայի թուռն ծաղկման տարիներ։ Սոցիալիզմի հաղթանակի հիման վրա երկրում ծավալվե-

ցին մեր հասարակարգի շարժիչ ուժերը՝ հասարակության բարոյա-քաղաքական միասնությունը, ժողովուրդների բարեկամությունը, սովետական կենսատու հայրենասիրությունը։ Հենվելով այդ ուժերի վրա, Սովետական պետությունը հիանալի հաջողությունների հասավ սոցալիզմի կառուցման գործում։

Խոսելով ՍՍՌ Միության Կոնստիտուցիայի նախագծի առանձնահատկությունների մասին, ընկեր Ստալինը բացահայտեց բուրժուական կոնստիտուցիաների հակադեմոկրատական էությունը։ Բուրժուական երկրներում արտադրության միջոցներն ու գործիքները գտնվում են կապիտալիստների ձեռքում, իսկ աշխատավորների հսկայական մեծամասնությունը տառապում է աղքատության ճիրաններում և դաժան կերպով շահագործվում փոքրաթիվ վերնախավի կողմից։ Բուրժուական կոնստիտուցիաները օրինականացնում են բուրժուազիայի դիկտատուրան և կամայականությունը, խեղդում են դեմոկրատական ազատությունները, աշխատավորությանը զրկում քաղաքական իրավունքներից։

Դրան միանգամայն հակառակ՝ սովետական Կոնստիտուցիան ամենադեմոկրատա-



կան Կոնստիտուցիան է աշխարհում։ Նա հասարակության բոլոր անդամների համար՝ անկախ ազգային և ռասսայական պատկանելիությունից, սեռից, կրթական ցենզից, դավանանքից, նստակեցությունից, սոցիալական ծագումից, գույքային դրությունից, անցյալ գործունեությունից, ապահովում է միատեսակ, հավասար իրավունքներ տնտեսական, հասարակական, պետական ու կուլտուրական կյանքի բոլոր բնագավառներում։ «Ո՛չ թե գույքային դրությունը,— ասում է ընկեր Ստալինը,— ո՛չ թե ազգային ծագումը, ո՛չ թե սեռը, ո՛չ թե պաշտոնական դրությունը, այլ յուրաքանչյուր քաղաքացու անձնական ընդունակություններն ու անձնական աշխատանքն են որոշում նրա դրությունը հասարակության մեջ»։

Մեծ և փոքր բոլոր ազգերի ու ժողովուրդների, հասարակության բոլոր անդամների իրավահավասարության մասին Ստալինյան Կոնստիտուցիայի հռչակած դեմոկրատական վեհ սկզբունքների փայլուն կենսագործումը տեսնում ենք մեր կյանքի բոլոր բնագավառներում։

Սովետական դեմոկրատիայի ամենավառ արտահայտություններից են հանդիսանում մեր երկրի իշխանության գերագույն և տե-

ղական օրգանների, ժողովրդական դատարանների ընտրությունները։ Դրանք տեղի են ունենում աշխարհում ամենադեմոկրատական ընտրական սիստեմի հիման վրա։ Ընտրությունները մեզ մոտ ընդհանուր են, ուղղակի, հավասար՝ գաղտնի քվեարկությամբ։ Ահա թե ինչու ամեն անգամ ընտրությունները մեր երկրում վեր են ածվում համաժողովրդական տոնախմբության և ցնծության, ահա թե ինչու սովետական յուրաքանչյուր քաղաքացի դեպի իր Հայրենիքն ու հարազատ իշխանությունն ունեցած վեհ հպարտությամբ է մասնակցում իշխանության օրգանների ընտրություններին։ Անցյալ տարի տեղի ունեցած ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրություններին մասնակցեց ընտրողների ավելի քան 99 տոկոսը։

Բոլորովին այլ պատկեր գոյություն ունի կապիտալիստական երկրներում։ Բուրժուական կոնստիտուցիաները ձևականորեն հայտարարում են քաղաքացիների իրավահավասարության մասին, բայց իրականության մեջ տիրող դասակարգերը աշխատավորական ամենալայն զանգվածներին զրկում են ամենատարրական իրավունքներից։ Այսպես, օրինակ, Ամերիկայի Միացյալ Նահանգներում կոնգրեսի վերջին ընտրություններին ընտրա-



կան իրավունք ունեցող 98 միլիոն մարդուց մասնակցեց միայն 40 միլիոն մարդ՝ այսինքն ընտրողների մոտ 40 տոկոսը։ Անգլիայում ընտրությունները հռչակված են որպես գաղտնի, սակայն այդ «գաղտնիությունը» կազմակերպված է այնպես, որ շատ հեշտությամբ կարելի է իմանալ, թե որ ընտրողը ում օգտին է քվեարկել, քանի որ ընտրողն ընտրական բյուլետենում պետք է նշի ընտրական ցուցակում եղած իր հերթական համարը։ Թյուրքիայում անցյալ տարի տեղի ունեցած մեջլիսի լրացուցիչ ընտրություններին 12 վիլայեթներից մասնակցեցինՍտամբուլում՝ ընտրողների 8,7 տոկոսը, Բուրսում՝ 21,4 տոկոսը, Բիթլիսում՝ 10 տոկոսը, Ղարսում՝ 13 տոկոսը, Մուշում՝ 4,5 տոկոսը։

ՍՍՌՄ-ն իրավահավասար ժողովուրդների Միություն է, որոնք բոլշևիկյան պարտիայի ղեկավարությամբ, ռուս. մեծ ժողովրդի օգնությամբ հասել են չտեսնված տնտեսական, քաղաքական ու կուլտուրական ծաղկման։

Սովետական Միության ազգային ռեսպուբլիկաների ծաղկումը կարելի է ցույց տալ, իրար հետ համեմատելով Սովետական Ադրբեջանի և կապիտալիստական Իրանի աճի տվյալները։ Ադրբեջանը սովետական

իշխանության տարիներին դարձավ ծաղկած, ինդուստրիալ երկիր. Իրանը նախկինի պես մնացել է հետամնաց ագրարային երկիր։ Ադրբեջանը համատարած գրագիտության երկիր է. Իրանում անգրագետները կազմում են ազգաբնակչության 85 տոկոսը։ Ադրբեջանում 163 հազար բնակչին ընկնում է մեկ բարձրագույն ուսումնական հաստատություն, 525 մարդուն մեկ բժիշկ. Իրանում 3 միլիոն 400 հազար բնակչին ընկնում է մեկ բարձրագույն ուսումնական հաստատություն և 11 հազար 300 բնակչին՝ մեկ բժիշկ։

Հաղթանակած սոցիալիզմի Կոնստիտուցիան ոչ միայն հռչակում, այլև երաշխավորում է, ապահովում է կյանքում քաղաքացիների իրավունքները և դեմոկրատական ազատությունները։

Ստալինյան Կոնստիտուցիան հռչակում է սովետական քաղաքացիների աշխատանքի իրավունք: Մեր երկրում վերացվել է գործազրկությունը։ Բանվորների և ծառայողների թիվը ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության մեջ 1950 թվականի վերջին կազմեց 39 միլիոն 200 հազար մարդ և 1940 թվականի վերջին եղած թվի համեմատությամբ աճեց 7 միլիոն 700 հազար մարդով։

Այն ժամանակ, երբ մեզ մոտ ամեն տա-



րի ավելանում է բանվորների և ծառայողների թիվը, տնտեսական կրիզիսի ճիրաններում բզկտվող կապիտալի աշխարհում օր-ավուր մեծանում է գործազուրկների քանակը։ ԱՄՆ-ում գործազուրկների և կիսագործազուրկների քանակը հասնում է 20 միլիոն մարդու, իսկ ամբողջ կապիտալիստական աշխարհում այժմ 45 միլիոն մարդ աշխատանք չունի։

Սովետական երկրի յուրաքանչյուր աշխատավորի համար ապահովված է հանգստի իրավունք, որից նա օգտվում է վճարովի արձակուրդ ստանալով, հանգստյան տներում և սանատորիաներում բուժվելով ու հանգստանալով։ Սովետական Միության բոլոր ծայրերում աշխատավորների համար ստեղծված են լավագույն առողջարաններ՝ սանատորիաներ և հանգստյան տներ։ Միայն 1950 թվականին այդ առողջարաններում բուժվել և հանգստացել է 4 միլիոն մարդ։

ՍՍՌՄ Կոնստիտուցիան սովետական քաղաքացիների համար ապահովում է նյութական ապահովության իրավունք ծերության, ինչպես նաև հիվանդության և աշխատունակությունը կորցնելու դեպքում։ Սոցիալական ապահովագրության վրա հետ-

պատերազմյան տարիներին կատարված ծախսերը կազմեցին ավելի քան 62 միլիարդ ռուբլի։

Ստալինյան Կոնստիտուցիան ապահովում է կրթության իրավունք։ Թե ինչպես են սովետական մարդիկ օգտվում այդ իրավունքից, ցայտուն կերպով երևում է հետևյալ թվերից. երկրի դպրոցներում այս տարի սովորում է 37 միլիոն աշակերտ, բարձրագույն ուսումնական հաստատություններում՝ 1 միլիոն 230 հազար ուսանող, այսինքն ավելի, քան սովորում են Եվրոպայի բոլոր երկրների բարձրագույն ուսումնական հաստատություններում՝ միասին վերցրած։ Մեր երկրում հաջողությամբ կենսագործվում է 7-ամյա պարտադիր ուսուցումը և անցում է կատարվում միջնակարգ պարտադիր ուսուցման։

Ցածր վիճակի մեջ է գտնվում ժողովրդական կրթության գործը Ամերիկայի Միացյալ Նահանգներում, ուր 20 միլիոն անգրագետ կա և ուր 6 միլիոն երեխաներ չեն հաճախում դպրոց։

Սովետական իշխանությունը ազատագրեց կնոջը՝ նրա համար ապահովելով հավասար իրավունքներ տղամարդու հետ։ Կանայք ՍՍՌՄ-ում ակտիվորեն մասնակցում են



երկրի կառավարման գործին։ 280 կանայք ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատներ են, 1.700 կանայք ընտրված են Միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների Գերագույն Սովետներում, ավելի քան 500 հազար կանայք տեղական Սովետների դեպուտատներ են։

Իր «դեմոկրատիայով» պարծեցող Ամերիկայի Միացյալ Նահանգներում գոյություն ունի մոտ հազար օրենք՝ ուղղված կանանց դեմ։ Տղամարդկանց հետ հավասար աշխատանքի համար կանայք ստանում են 40—50 տոկոսով պակաս աշխատավարձ։

Տասնհինգ տարի առաջ Սովետների 8-րդ Արտակարգ համագումարում տված իր զեկուցման մեջ ընկեր Ստալինն ասաց, որ ՍՍՌՄ-ի նոր Կոնստիտուցիան բարոյական օգնություն և իրական օժանդակություն կլինի բոլոր նրանց համար, ովքեր պայքար են մղում ֆաշիստական բարբարոսության դեմ, որ կապիտալիստական երկրների ժողովուրդների համար ՍՍՌՄ Կոնստիտուցիան կունենա գործողության ծրագրի նշանակություն։ Կյանքը լիովին հաստատեց մեծ առաջնորդի կանխատեսումները։ Այդ մասին են վկայում ժողովրդական դեմոկրատիայի երկրները, որոնք հաջողությամբ սոցիալիզմ են կառուցում։ Այդ մասին են վկայում դեմոկրատա-

կան այն մեծ բարեփոխությունները, որոնք այժմ կենսագործում է չին մեծ ժողովուրդը։ Ստալինյան Կոնստիտուցիան, որպես խաղաղության դրոշ, հավատ է ներշնչում կապիտալի աշխարհի աշխատավոր մարդկանց, որոնք պայքարում են հանուն խաղաղության ու դեմոկրատիայի, ընդդեմ իմպերիալիստական ռեակցիայի, ընդդեմ նոր պատերազմի հրձիգների։ Ստալինյան Կոնստիտուցիան աշխարհի պրոգրեսիվ մարդկանց պայքարի է ոգեշնչում հանուն խաղաղության և ժողովուրդների անվտանգության։

Սովետական Միության ժողովուրդները բոլշևիկների պարտիայի ղեկավարությամբ աշխարհում ամենադեմոկրատական Ստալինյան Կոնստիտուցիայի խաղաղության դրոշով լի են վճռականությամբ՝ շարունակելու գլխավորել և է՛, ավելի ծավալել խաղաղության գործը ամբողջ աշխարհում։





# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

I.

## ԻՈՍԻՖ ՎԻՍՍԱՐԻՈՆՈՎԻՉ ՍՏԱԼԻՆԸ ՀԱՂԹԱՆԱԿԱԾ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԿՈՆՍՏԻՏՈՒՑԻԱՅԻ ՍՏԵՂԾՈՂՆ Է

1. Ի. Վ. Ստալինը սոցիալիստական շինարարության ոգեշնչողն ու կազմակերպիչն է, հաղթանակած սոցիալիզմի Կոնստիտուցիայի ստեղծողը։

2. Ստալինյան Կոնստիտուցիան ամենադեմոկրատական կոնստիտուցիան է աշխարհում։

3. Ստալինյան Կոնստիտուցիայի դրոշի ներքո սովետական ժողովուրդը հաջողությամբ կոմունիստական հասարակություն է կառուցում ՍՍՌՄ-ում։

4. Ստալինյան Կոնստիտուցիան ամբողջ աշխարհի աշխատավորների՝ հանուն խաղաղության և բարեկամության, հանուն դեմոկրատիայի և սոցիալիզմի մղվող պայքարի մարտական ծրագիրն է։

5. Ստալինյան Կոնստիտուցիայի Օրը նշանավորենք ընկեր Ստալինին տված պարտավորությունների կատարմամբ և գերակատարմամբ։

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.*— Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Կոնստիտուցիայի նախագծի մասին: *Հայպետհրատ, առանձին բրոշյուրով:*

*Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.*— Ճառեր Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովներում, 1937 թ. դեկտեմբերի 11-ին և 1946 թ. փետրվարի 9-ին: *Հայպետհրատ, առանձին բրոշյուրներով:*

ՍՍՌՄ-ի Կոնստիտուցիան:

Կոմունիստական պարտիայի և սովետական ժողովրդի մեծ առաջնորդը և ուսուցիչը: *Ի. Վ. Ստալինի ծննդյան 70-ամյակի առթիվ, 2-րդ բաժին: «Ս. Հ.» 1949 թ. դեկտեմբերի 16:*

*II.*

## ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԿԱՐԳԵՐԻ ՀԱՍՏԱՏՄԱՆ 31-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

*1. Սովետական Հայաստանը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի ծնունդն է:*

*2. Լենինը և Ստալինը հայ ժողովրդի մեծ ազատարարներն են:*

*3. Հայաստանը Սովետական Մեծ Միության ծաղկած ռեսպուբլիկաներից մեկն է:*

*4. Հայկական ՍՍՌ-ն սոցիալիստական առաջավոր արդյունաբերության երկիր է:*



*5. Հայաստանը կոլտնտեսային առաջավոր գյուղատնտեսության սոցիալիստական ռեսպուբլիկա է:*

*6. Հայ ժողովրդի ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական ծաղկած կուլտուրան:*

*7. Հայ ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի անշեղ աճը՝ աշխատավորների նկատմամբ կոմունիստական պարտիայի ցուցաբերած հոգատարության փայլուն արտահայտությունն է:*

*8. Սովետական Միության ժողովուրդների և առաջին հերթին ռուս մեծ ժողովրդի եղբայրական, ամենօրյա օգնությունը հայ ժողովրդի առաջընթացի կենսական աղբյուրն է:*

*9. Սովետական Հայաստանի աշխատավորության պայքարը հանուն մեր Հայրենիքի հզորության, հանուն խաղաղության ամրապնդմանը ամբողջ աշխարհում:*

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— «Կեցցե՛ Սովետական Հայաստանը»: *Երկեր, 4-րդ հատոր, էջ 458—459:*

Ա. Ի. ՄԻԿՈՅԱՆ.— Ճառ Երևանի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում: *«Ս. Հ.», 1950 թ. մարտի 11-ին:*

Լ. Պ. ԲԵՐԻԱ.— Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 34-րդ տարեդարձը: Զեկուցում Մոսկվայի Սովետի հանդիսավոր նիստում 1951 թվականի նոյեմբերի 6-ին: *«Ս. Հ.» 1951 թ. նոյեմբերի 7, «Ագիտատորի բլոկնոտ» № 21, 1951 թ.:*

Գ. Ր. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ.— Հաշվետու զեկուցում Հա-

յաստանի Կ(բ)Պ 15-րդ համագումարում ՀԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին: *Հայպետհրատ առանձին բրոշյուրով, «Ագիտատորի բլոկնոտ» № 6, 1951 թ.։*

Հայկական ՍՍՌ Պետական Պլանային Հանձնաժողովի և Վիճակագրական Վարչության հաղորդագրությունը Հայկական ՍՍՌ 1946—1950 թվականների չորրորդ (հետպատերազմյան առաջին) հնգամյա պլանի կատարման արդյունքների մասին: *«Ս. Հ.» 1951 թ. հունիսի 13։*

Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացման 1951 թվականի 3-րդ եռամսյակի պետական պլանի կատարման արդյունքները: Հայկական ՍՍՌ Վիճակագրական Վարչության հաղորդագրությունը: *«Ս. Հ.» 1951 թ. հոկտեմբերի 31։*

Սովետական Հայաստանի նվաճումները հետպատերազմյան նոր հնգամյակում: *«Ագիտատորի բլոկնոտ» № 1 և № 2 1951 թ.։*

### *III.*

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԱՏԱՐԱՆԸ ԱՄԵՆԱԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ԴԱՏԱՐԱՆՆ Է ԱՇԽԱՐՀՈՒՄ

*1. Սովետական օրենքների ճշգրիտ և անշեղ կիրառման ապահովումը, սոցիալիստական սեփականության պաշտպանությունը՝ սովետական դատարանի կարևորագույն խնդիրն է։*



*2. Սովետական ժողովրդական դատարանը՝ ՍՍՌՄ քաղաքացիների իրավունքների պաշտպանության օրգանն է։*

*3. Բուրժուական դատարանը՝ կապիտալի շահերի պաշտպանության օրգանն է, աշխատավորներին կեղեքելու և ճնշելու գործիքը։*

*4. Ժողովրդական դատավորների և ատենակալների ընտրականությունը, դատական օրգանների աշխատանքներում աշխատավորական լայն մասսաների ներգրավումը՝ սոցիալիստական դեմոկրատիայի վառ արտահայտությունն է։*

*5. Սովետական օրենքների անշեղ պահպանումը՝ մեր երկրի ամեն մի քաղաքացու պարտքն է։*

### *ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Կոնստիտուցիան (Հիմնական Օրենքը): *9-րդ գլուխ։*

Օրենք՝ ՍՍՌՄ, Միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների դատարանակազմության մասին: *Հայպետհրատ, 1948 թ.։*

Հայկական ՍՍՌ ժողովրդական դատարանների ընտրությունների կանոնադրությունը: *«Ս. Հ.» 1951 թ. հոկտեմբերի 30։*

---

Պատ. խմբագրի տեղակալ՝
Տ. ՎԱՐԺԱՊԵՏՅԱՆ

ԳԻՆԸ 50 ԿՈՊ.

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б)
Армении

**БЛОКНОТ АГИТАТОРА**

№ 22 1951 г.

ՎՖ 05452 Պատվեր № 966 Տիրաժ 9300

Հայպոլիգրաֆհրատի II տպարան, Երևան,
Կնունյանցի փ. № 8, 1951 թ.: